## Փարիզի պաշտպանութեան համար

Նկատի առնելով որ գիշերային յարձակումները յաճախադէպ դարձած են Փարիզի մէջ, ոստիկանութիւնը կարգ մը բացառիկ միջոցներ ձեռք առաւ: Այսպէս, 60-80 հեծելանուորդ ոստիկաններ գիշերն ի բուն պիտի շրջին քաղաքին մէջ:

Յետոյ, քսան ոստիկանական ինքնաշարժներ հսկողութիւն պիտի կատարեն: Աւելցուած է նաեւ գաղտնի ոստիկաններուն թիւը:

## Եգիպտոսի անկախութեան տասնամեակը

Փետրուար 28ին լրացաւ 1922ի անգլեւեգիպտական համաձայնութեան տասնամեակը: Այս առթիւ բազմաթիւ հրատարակութիւններ երեւցան մամուլին մէջ: Ջափաւոր թերթերը կը սպասեն որ վարչապետ Սըտքը փաշա յաջողութեամբ կարգադրէ առկախ մնացած խնդիրները:

Իսկ ազգայնականները (Վաֆտ) ընդհակառակն հլու կամակատար մը համարելով վարչապետը, կը պահանջեն պոյքոթ հռչակել անգլիական ապրանքներու դէմ, ինչպէս տեղի կ'ունենայ Հնդկաստանի մէջ:

Խնդիրը այն է որ, ստերլինի անկումէն ի վեր, անգլիական ապրանքները աւելի աժան կը ծախուին Եգիպտոսի մէջ:

## Մուսուլի խարիղատար

*Լիբանանի երեսփ. ժողովը 100,000 սուրիական ոսկիի վարկ մը քուէարկեց կալուածական քարտէսի մը պատրաստութեան համար, նկատելով որ անյապաղ պիտի սկսի Մուսուլի քարիւղատար խողովակներուն (Փայփլայն) շինութիւնը եւ ընկերութիւնը հողեր պիտի գնէ երկրին մէջ:*

## Կիներու համաժողովը Փարիզի մէջ

Չորեքշաբթի օր, Փարիզի մէջ բացուեցաւ կիներու համաժողով մը, նախագահութեամբ Տիկին Լըքուվէի: Ֆրանսայի կիներու Ազգային դաշնակցութեան քարտուղարուհին այս առթիւ ներկայացուց տեղեկագիր մը, որ կը խօսի նաեւ գործազրկութեան մասին եւ կ'առաջարկէ հողին կապել անգործները:

Յետոյ ճառեր խօսուեցան կիներու քաղաքական իրաւունքներու մասին: Այս առթիւ տեղեկութիւններ տրուեցան մանուկներու փրկութեան համար կատարուած աշխատանքներու մասին:

## Մանր խռովութիւններ Սօֆիայի մէջ

Պուլկարիոյ խորհրդարանը օրէնքով մը լուծեց Սօֆիայի քաղաքապետութիւնը, եւ որոշեց որ եօթը հոգինոց մարմին մը վարէ գործերը, մինչեւ նոր ընտրութիւն: Այս առթիւ ժողով մը գումարեց ազգային-ազատական խմբակցութիւնը, իր թեկնածուները ընտրելու համար: Յանկարծ վէճ մը ծագեցաւ որ վերածուեցաւ ճակատամարտի: Սրահին մէջ գաւազաններ եւ աթոռներ իրար խառնուեցան: Յետոյ ծխարձակ ռումբ մը պայթեցաւ եւ ատրճանակներ որոտացին: Ոստիկանութիւնը հասնելով, հազիւ կրցաւ կարգ-կանոնը վերահաստատել:

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՅՈՒԿՈՍԼԱՎԻՈՅ Ալեքսանդր թագաւորը յայտնեց թէ պատրաստ է չորս միլիոն տինար (20 հազար ստերլին) կրճատելու իր անձնական գանձը, երկրին խնայողութեան օգնելու համար:

ՉԻՆՍ.ԹԱՓՈՒԹԵԱՆ ժողովին մէջ, Ֆրանսայի պատուիրակութեան ծախքը մինչեւ ապրիլ 1 պիտի հասնի 13,600 ստերլինի:

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ Տնտեսական Գերագոյն խորհուրդը կը յանձնարարէ անգլիացի հանքային մասնագէտներ հրաւիրել, հանքերու արագ արտադրութիւնը ապահովելու համար:

### Յ. Դ. — Գաւառ

*ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. միութեան ժողովը յետաձգուած է:*

*ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէի անդամներու ընդհ. ժողովը [illegible] Կիրակի յետմիջօրէ ժամը 3.30ին ծանօթ հաւաքավայրին: Ներկայութիւնը պարտաւորիչ է:*

*ՍԷՆ ՇԱՄՕՆԻ Վարդանեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը [illegible] Կիրակի [illegible] ժամը 3ին ծանօթ հաւաքավայրին, Café Découssus սրահը, Place de la Liberté: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:*

*ՎԻԷՆ (Լիոն) Աւոյեանի խումբի ժողովը այս Կիրակի ժամը 2ին ընկ. [illegible] բնակարանին մէջ: [illegible] Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ:*

*ՄԱՐՍԷՅԼԻ [illegible] ենթակոմիտէի ժողովի կը հրաւիրէ Արամ, [illegible] Համազասպ եւ Վարդգէս խումբերը վաղը Շաբաթ երեկոյեան ժամը 8ին ծանօթ հաւաքավայրին: Կարեւոր օրակարգ:*

### Փարիզ եւ արուարձաններ

*ՓԱՆԵԼՕԹԻ Հ. Յ. Դ. Արմէն խումբը ընկերական թէյասեղանի մը [illegible] Կիրակի 31 Rue Madame Curie, Bagneux. Կը հրաւիրուին համակիրները եւս:*

*ԱՍՆԻԷՐ-Պուա Քոլոմպի Պատանեկան Միութեան դասախօսութիւնը վաղը Շաբաթ երեկոյեան, Սանտ Մեսրոպ Դպրոցին մէջ, 26 Rue du Président Krüger, Asnières: Կը խօսի ընկ. ՎԱՀԻԿ ՇՈՒՇԱՆԵԱՆ*

## «ՓԵՏՐՈՒԱՐ 18»ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

### Ալֆորվիլ

*Այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 2.30ին, Place Comète, ծանօթ սրահին: Կը խօսի ընկ. ՍԱՀԱԿ ՏԵՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ*

### Նիս

*Վաղը Շաբաթ երեկոյեան ժամը 9ին «Պառ Միկ» սրահին մէջ 364 Bld. de la Madeleine. Կը խօսի ընկ. Ա. ԱՐՈՅԵԱՆ. Մուտքը ազատ է*

### Սէն Լու (Մարսէյլ)

*Այս Կիրակի ժամը 2.30ին տեղւոյն սրահին մէջ: Կը խօսի ընկ. ՄԱՐՈՒԹԵԱՆ. Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ. Մուտքը ազատ է*

### Սէն Ժէրոմ

*Վաղը Շաբաթ երեկոյեան ժամը 9ին Մէսոն-Ալֆորի սրահին մէջ: Կը խօսին ընկերուհի Տիկին ԹՈՓՈՒԶԵԱՆ եւ ընկ. Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆ. Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ. Մուտքը ազատ է*

### Փարիզի Գրական Ակումբ

*Վաղը Շաբաթ երեկոյեան ժամը 8.30ին, 130 Rue Cambronne, Métro Vaugirard: Զրոյց եւ կարծիքներու փոխանակութիւն [illegible] Մուտքը ազատ է*

### Ա. Ե. Հ. Կ. Խաչի Փարիզի «Մասնաճիւղ Պաշտպանութեան» մասնաճիւղի

*ՋՐՈՅՑ-ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ այս Կիրակի ժամը 3ին, 71 Ave. Kléber. ՆԻւԹ՝ ՕՏԱՐՆԵՐՈՒ ՀԵՏ ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆԸ ՄԵՐ ՄԷՋ. Զեկուցանող՝ ՏԻԿԻՆ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ. Զրոյցը կը ղեկավարէ Պ. Ա. ՉԱՄԱԼԵԱՆ. Մուտքը ազատ է*

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ԻՇԽԱՆՈՒՀԻՆ

*Հայաստան պատմական ֆիլմը Լիոնի մէջ*

*Միմեան մէկ անգամուան համար կը ցուցադրուի այս Կիրակի երեկոյեան ժամը 5.30ին, Սինէմա Սեկսի մէջ, 60 Ave. de Saxe. Պիտի ներկայացուի նաեւ [illegible] ծիծաղաշարժ ֆիլմ մը. [illegible] Գիները 6, 5 եւ 4 ֆրանք. Տոմսերը կը ծախուին հայկական նպարավաճառանոցներու եւ Սալոնի [illegible]*

### ՑՈՒՑԱՀԵՏՔ

*ՏՐԱԳԻՔՈՒՌ Հայր. Միութեան ժողովը վաղը Շաբաթ երեկոյեան ժամը 8.30ին Ֆիլիպի մէջ:*

*Չ.Պ. ՄԻՈՒԹԵԱՆ Մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ երեկոյեան ժամը 8.30ին տեղւոյն հաւաքատեղին: Պարտաւորիչ ներկայութիւն:*

*ԽԻՄ ԼԸ ՄՈՒԼԻՆՕՅԻ Ա. Ե. Հ. Կ. Խաչի ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ վաղը Շաբաթ երեկոյեան ժամը 8.30ին 24 Rue J. J. Rousseau: Բոլոր ընկեր եւ ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է:*

### Ուշադրութիւն

*Հ. Յ. Դաշնակցութեան Լիոնի Կոմիտէն [illegible] Դպրոցին, փոխադրուած է 240 Rue Duguesclin, նախ. Կին պաշտօնակերպ 100 փայլ [illegible] Mazenod փողոցի անկիւնը [illegible]*

*Դիւանատուն բաց է ամէն երեկոյ ժամը 7.30—9, բացի Շաբաթ եւ Կիրակիէ:*

### Գնեցէք

*Հ. Յ. Դ. Մարսէյլի Պատ. Միութեան Յիշատակարանը [illegible] ամէն Հայու տան [illegible] Ֆրանկ G. Djarayan, 14 rue de la Fare, Marseille.*



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (161)

## ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՑՈՒՇԵՐԸ

### Հայոց դահիճը կը պատմէ

### Շարունակուած

### 8.— ԱՐՓԻԱՐ ԱՐՓԻԱՐԵԱՆ

[illegible]

## Արխիթիս Պոխանի յուղարկաւորութիւնը

Ծերակոյտէն յետոյ, երեսփ. ժողովն ալ 5ի դէմ 505 ձայնով քուէարկեց բանաձեւ մը, որ Պոխանը կը յայտարարէ արժանի հայրենիքի:

Ուրբաթ օր, մօտ երեսուն հազար անձեր, իրենց վերջին յարգանքը մատուցին Պոխանի: Երէկ, կէսօրէն վերջ ժամը 1.40ին, Թաղման կրօնական արարողութիւնը տեղի ունեցաւ ի ներկայութեան հանրապետութեան նախագահին եւ բոլոր նախարարներուն, արտաքին պաշտօնատան մէջ:

Վարչապետ Պ. Թարտիէօյի դամբանականէն յետոյ, յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ մեծ շուքով, հազարաւոր բազմութեան մը մասնակցութեամբ:

Մանրամասնութիւնները յաջորդով:

## Ֆրանսուհիներու քուէարկութիւնը

Ֆրանսական Ծերակոյտը իր վերջին նիստին մէջ զբաղեցաւ ֆրանսուհիներու քաղաքական իրաւունքներու հարցով, ընտրելի եւ քուէարկու ըլլալու տեսակէտէն:

Մէկ քանի ծերակուտականներ առաջարկեցին հարցին քննութիւնը յետաձգել մինչեւ յունիս: Իսկ ուրիշներ բողոքեցին յետաձգման այս առաջարկին դէմ, զոր նկատեցին տեսակ մը փախուստ:

Ծերակուտականները այս փոխասացութենէն վերջ, նախագահը քուէի դրաւ յետաձգման առաջարկը, որ ընդունուեցաւ 131ի դէմ 170 ձայնով:

## Երկրաշարժ Յունաստանի մէջ

Երկրաշարժի բուռն ցնցումներ տեղի ունեցան Յոնիական կղզիներուն մէջ: Ռավալլաթա, Ռիֆի եւ Ֆլիքաթա գիւղերուն մէջ, բազմաթիւ տուներ փլան: Լիքսուրի գիւղաքաղաքն ալ մեծ չափով վնասուեցաւ:

Ցնցումները մասնաւորաբար բուռն եղած են Արկոսիոնի մէջ, ուր բազմաթիւ բնակարաններ քանդուեցան: Երկրաշարժը ցնցած է նաեւ Փրէվէզան, Եանեան, եւ Եպիրոսը:

Վերջին լուրերու համաձայն, հեռագրական եւ հեռաձայնական հաղորդակցութիւնները խզուած են Փաթրասի եւ Քեֆալոնիայի միջեւ:

Նիւթական վնասները մեծ են: Ցնցուած վայրերու բնակիչները բացը կը գիշերեն:

## Լինտպէրկ՝ տղուն եսեւեն

Լինտպէրկի տղեկին առեւանգման գաղտնիքը տակաւին չէ լուսաբանուած: Լինտպէրկ որ չուզեր այլեւս որեւէ տեղեկութիւն հաղորդել ոստիկանութեան, վախնալով գրգռելէ առեւանգիչները, կը շարունակէ անձնապէս հետապնդել իր զաւկին փրկութիւնը: Ո՛չ ոք գիտէ սակայն թէ ի՛նչ յաջողութիւն ունեցած է եւ ի՛նչ յոյսեր կրնայ տածել:

Երկու օրէ ի վեր, պարզ գինուորի զգեստ հագած, անընդհատ կ'երթեւեկէ ինքնաշարժով: Ամերիկեան բոլոր թերթերը հրատարակած են հետեւեալ ծանուցումը Լինտպէրկի կողմէ.— «Ստացայ նամակը՝ նոր հասցէով: Պէտի հետեւիմ տրուած հրահանգներուն: Ստացայ նոյնպէս ծարտ 4ի նոմակը եւ պատրաստ եմ այդ օրէն ի վեր: Անհամբերեցէք ծորը պատճառաւ: Պատասխանը ղրկեցէք ձեր նամակին մէջ ցոյց տրուած հասցէով»:

Մատնանշուած հասցէին տէրն է անձ մը, որ ազատ մուտք ունի պզտոր շրջանակներուն մէջ եւ Լինտպէրկի տան մէջ տեղաւորուած, կը վարէ գործողութիւնները:

Այս գործողութիւնները կը կատարուին երկու համբաւաւոր ծաքսանենգներու օժանդակութեամբ: Բայց ասոնց միջամտութիւնը հաճոյք չէ պատճառած առեւանգիչներուն, որոնք սպառնական նամակներ տեղացուցած են անոնց:

Վախնալով որ տղեկը կը փախցնեն Ամերիկայէն դուրս, Նիւ Եորքէն Եւրոպա համնող շոգենաւերը հսկողութեան տակ կ'առնուին եւ անոնց մէջ գտնուող ճամբորդներու տղեկները ուշի ուշով կը քննուին:



## Թէյասեղան

Կազմակերպուած Ատաբազարի Հայր. Միութեան կողմէ
Այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30էն 40 Րիւ տը Պէվիւ
կը նախագահէ՝ ՏՕՔԹ. ՆՈՐԱՅՐ
Տախքերու մասնակցութեան համար՝ 2 ֆրանք 50



## Կ'ուզուի դերձակ—գործաւոր

Փարիզէն 80 քիլոմէթր հեռու գտնուող փոքր քաղաքէ մը կ'ուզուի դերձակի գործաւոր մը, որ կարենայ օգնել ափիէօսէրի: Ամբողջ տարուան համար աշխատանքը երաշխաւորուած: Մանրամասնութեանց համար դիմել «Յառաջ»ի վարչութեան:







Կ'ուզուի Տիկին մը կամ Օրիորդ մը որ կարողանայ փոքրիկներու հայերէն դասաւանդել, շաբաթը երկու անգամ: Թեկնածուին կը հայթայթուի գործ տեղւոյս վրայ, պայմանաւ որ քիչ մը ֆրանսերէն գրել գիտնայ եւ 20 ֆրանքնոց ինքնութեան թուղթ ունենայ: Մանրամասնութեանց համար գրել՝ Ephorie de la Communauté Arménienne, 11 rue de l'Ecole, Aix-en-Provence, (B.D.R.)

Ստիպողական

Կ'ուզուին երիտասարդ եւ զարգացած հայ երիտասարդներ շահաբեր գործի համար: Ներկայանալ անմիջապէս կէսօրէ առաջ ժամը 10—12 Պ. Xynosի 18 rue Chaussée d'Antin, Paris.

Imp. A. DER (Agopian)
17, Rue Damesme, Paris (13)

Le Gérant H. STEPHAN

Imp. A. DER (Agopian)
17, Rue Damesme, Paris (13)

Le Gérant H. STEPHAN

